# ՀԱՄԱՌՈՏ ՈՒՂԵՑՈՒՅՑ
## ՀԱՅԿԱԿԱՆ ՁԱՅՆԱԳՐՈՒԹՅԱՆ

**Այս էլ. գրքույկը տրվում է**
**LimonjianNotation տառատեսակի**
**և համապատասխան ստեղնաշարային**
**դասավորվածքի հետ միասին**



**Երևան**

**2019**

# ՀԱՄԱՌՈՏ ՈՒՂԵՑՈՒՅՑ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՁԱՅՆԱԳՐՈՒԹՅԱՆ



## Հայկական ձայնագրություն



Համբարձում Լիմոնճեան

Հայկական ձայնագրությունը կամ նոտագրման համակարգը ստեղծվել է 1813-1815 թվականներին Կոստանդնուպոլսում: Հեղինակ է համարվում կոստանդնուպոլսեցի երաժիշտ և Հայ Եկեղեցու դպիր Համբարձում Լիմոնջյանը (Լիմոնճյան), որը, վերցնելով հայկական միջնադարյան խազերի պատկերներն ու անվանումները, դրանք գործածել է նոր սկզբունքով ու դրանց տվել նոր արժեքներ՝ հարմարեցնելով եվրոպական նոտագրման համակարգին: Այսինքն՝ հայկական ձայնագրության ձայնանիշերը (նոտաները) միայն տեսքով ու անունով են կրկնում միջնադարյան խազերը. դրանք խազեր չեն:

Այս համակարգը Լիմոնջյանի աշակերտ Արիստակես Հովհաննիսյանը լրացրել է տևողության նշաններով, այլք, ներառյալ Կոմիտասը, նույնպես թեթև լրացումներ են կատարել, իսկ կոստանդնուպոլսեցի տպագրիչ Հովհաննես Մյուհենդիսյանը նշանների համար տպագիր ձևեր ու կաղապարներ է ստեղծել, և այս համակարգն արդյունավետորեն կիրառվել է ամբողջ 19-րդ դարում և 20-րդ դարի սկզբին: Դրանով գրառվել ու հրատարակվել են հայ երաժշտական մշակույթի հսկայածավալ հատորներ՝ Հայ Եկեղեցու համարյա բոլոր ծիսական

երգերը՝ Ժամագրքի բոլոր երգերը, Պատարագի տարբերակների բոլոր մեղեդիներն ու տաղերը, ամբողջ Շարակնոցը՝ երկու տարբերակով (մեկը հրատարակվել է Էջմիածնում, մյուսը՝ Կ. Պոլսում), նաև տաղեր, մանկական երգեր և այլն: Լիմոնջյանի համակարգը դրա մի տարբերակով գործածել են նաև թուրքերը՝ դրանով հրատարակելով թուրքական եղանակների բազմաթիվ հատորներ՝ այսպիսով կորստից փրկելով թուրքական երաժշտական մշակույթի մի կարևոր մաս, ուստի Համբարձում Լիմոնջյանն իրավամբ համարվում է նաև թուրքական պրոֆեսիոնալ երաժշտության հիմնադիրներից մեկը: Լիմոնջյանի համակարգի՝ թուրքերի կողմից գործածվող տարբերակի մասին որոշ մանրամասներ տրված են այս ուղեցույցում ավելի ուշ:

Հայկական ձայնագրությամբ էր ժողովրդական երգերը գրառում Կոմիտասը. անշուշտ ո՛չ այն պատճառով, որ եվրոպական նոտաներին տեղյակ չէր, այլ որովհետև հայկական ձայնագրությունը շատ ավելի հարմար է արագ գրառման համար: Սա այս համակարգի առավելությունն է եվրոպական նոտագրման համակարգի համեմատ: Հետագայում ևս, հատկապես Կ. Պոլսի հայ եկեղեցիներում, շարունակել են այս համակարգի գործածությունն ընդհուպ մինչև մեր օրերը, սակայն այն, ցավոք, այլևս չունի այն տարածումն ու նշանակությունը, որ ուներ ժամանակին: Եվ իզուր: Բանն այն է, որ հայկական ձայնագրության համակարգով հնարավոր է գրառել ցանկացած երգվող մեղեդի՝ ձայնական երաժշտություն, և, ցանկության դեպքում, նաև գործիքային երաժշտություն, չնայած որ այս համակարգը հիմնականում միայն ձայնական երաժշտության գրառման համար է ստեղծվել: Եվրոպական նոտագրության համեմատ հայկական այս համակարգի հիմնական առավելությունն այն է, որ հայկական ձայնանիշերով կարելի է գրառել ցանկացած թղթի կտորի վրա, ինչպես տառերով, քանի որ այս համակարգը չի պահանջում հատուկ գծային հենք, ինչպես եվրոպական նոտագրությունը, որը պահանջում է հնգագիծ: Նույն կերպ նաև, ունենալով համապատասխան տառատեսակ (ազատորեն տրամադրվում է LimonjianNotation-ը, հեղինակ՝ Ռուբեն Թարումյան) և ստեղնաշարային դասավորվածք, Լիմոնջյանի համակարգը կարելի է գործածել բազմաթիվ համակարգչային խմբագրիչ ծրագրերում (թեև կան նախընտրելի խմբագրիչներ, որոնք կհիշատակենք ավելի ուշ): Համեմատության համար նշենք, որ եվրոպական նոտագրությամբ շարվածք հավաքելու համար անհրաժեշտ է ունենալ համապատասխան երաժշտական ծրագրակազմ. սովորական խմբագրիչներն այս դեպքում անհարմար են, իսկ հատուկ ծրագրակազմերի յուրացումը բավական ժամանակ է պահանջում: Մինչդեռ հայկական ձայնագրությանը տիրապետող անձն այս համակարգով կարող է սովորել վարժ մուտքագրել մի քանի ժամում:

Հայկական ձայնագրության համակարգը, ինչպես արդեն նշեցինք, ստեղծվել է եվրոպական նոտագրության սկզբունքով, հետևաբար եվրոպական նոտագրությանը քաջածանոթ անձը շատ հեշտությամբ կարող է յուրացնել հայկական ձայնագրությունը:

Ստորև հակիրճ կներկայացնենք այն, իսկ հավելյալ տեղեկությունների համար օգտվեք համապատասխան գրականությունից: Հայկական ձայնանիշերով հրա-

տարակված կարևոր ժողովածուների մեծ մասը թվայնացված է (հիմնականում Հայաստանի ազգային գրադարանի ջանքերով) և ազատորեն ներբեռնելի է: Դրանց ցանկը՝ համապատասխան հղումներով, ներկայացրել ենք այս ուղեցույցի վերջում: Ցանկում կգտնեք նաև հայկական ձայնագրության ձեռնարկներ, ինչպես նաև Կոմիտասի երկերի 14-հատորյակի 13-րդ հատորը, որում երգերը ներկայացված են թե՛ Կոմիտասի գրառմամբ՝ հայկական ձայնանիշերով, թե՛ եվրոպական ձայնանիշերով զուգահեռ տրված փոխարկմամբ: Այսպիսի հրատարակությունը թերևս հարմար լինի վարժությունների համար:



## Ձայնանիշեր

Հայկական ձայնագրության հիմնական ձայնանիշերն են **փուշը, էկորճը, վերնախաղը, բենկորճը, խոսրովայինը, ներքնախաղը** և **պարույկը**:

փուշ

էկորճ

վերնախաղ

բենկորճ

խոսրովային

ներքնախաղ

պարույկ

Սրանք դեռևս 19-րդ դարից ունեն երկու ընթերցում, որոնք պայմանականորեն կոչենք *կոստանդնուպոլսյան* և *էջմիածնական*: Կ. Պոլսում (Ստամբուլ) հրատարակված և այսօր էլ այնտեղ կիրառվող ձայնանիշերին տրված հնչյունային արժեքները մեկ տոնով տարբերվում են դրանց այն արժեքներից, որոնք կիրառվել են Մայր Աթոռ Սբ Էջմիածնում հրատարակված գրքերում: Կոմիտասը նույնպես հետևել է այսպես կոչված էջմիածնական ընթերցմանը: Կոստանդնուպոլսյան ընթերցմամբ՝ փուշը համապատասխանում է եվրոպական ռեին (սա հենց այն հնչյունային արժեքն է, որ տրվել է այս ձայնանիշին ի սկզբանե), և հաջորդող ձայնանիշերն էլ՝ էկորճ, վերնախաղ, բենկորճ, խոսրովային, ներքնախաղ,

պարույկ, համապատասխանաբար, ընթերցվում են ինչպես եվրոպական մի, ֆա դիեզ, սոլ, լա, սի, դո նոտաները: Հետագայում` Էջմիածնում հրատարակվող գրքերում, փուշը համապատասխանեցվել է դոյին, ուստի հաջորդող ձայնանիշերն էլ, համապատասխանաբար, ռե, մի, ֆա, սոլ, լա, սի բեմոլն են:

| Ձայնանիշ | | Էջմիածնական ընթերցում | Կոստանդնուպոլսյան ընթերցում |
|---|---|---|---|
| փուշ (*կարճ*` փո) |  | դո | ռե |
| էկորճ (է) |  | ռե | մի |
| վերնախաղ (վե) |  | մի | ֆա դիեզ |
| բենկորճ (բե) |  | ֆա | սոլ |
| խոսրովային (խո) |  | սոլ | լա |
| ներքնախաղ (նե) |  | լա | սի |
| պարույկ (պա) |  | սի բեմոլ | դո |

Ինչպես նկատեցիք, կոստանդնուպոլսյան ընթերցմամբ` վերնախաղը ֆա դիեզն է, ոչ թե ֆան: Իսկ էջմիածնական ընթերցմամբ էլ` պարույկը ոչ թե սին է, այլ սի բեմոլը, ինչը համապատասխանում է եվրոպական նոտաների` տառերով ներկայացման գերմանական ընթերցմանը, որ Գերմանիայից բացի կիրառվում է նաև եվրոպական մի շարք այլ երկրներում ու Ռուսաստանում. C, D, E, F, G, A, B (այստեղ B-ն համապատասխանում է սի բեմոլին և ոչ թե սիին` ի տարբերություն անգլիական ընթերցման: Սիի տառային նշանակումը H-ն է, որը, ինչպես կարելի է տեսնել, B-ին փոխարինելու դեպքում խախտում է տառերի այբբենական դասավորությունը, քանի որ A-ին պիտի հետևի B-ն և ոչ թե H-ը):

Եթե ուշադիր համեմատեք հայկական ձայնանիշերի երկու ընթերցումները, ապա կնկատեք, որ երկուսում էլ պահպանված է ձայնանիշերի միջև տոնային տարբերությունների նույն հաջորդականությունը (1, 1, 1/2, 1, 1, 1/2): Սա նշանակում է, որ երկու ընթերցումներից որն էլ որ գործածեք, արդյունքում նույն մեղեդին եք ստանալու: Օրինակ` եթե դուք սովորել ու գործածում եք հայկական ձայնանիշերն էջմիածնական ընթերցմամբ և պետք է ընթերցեք Կ. Պոլսում հրատարակված գրառումներ (որոնց հեղինակը փուշով նկատի է ունեցել ռեն և ոչ թե դոն և այսպես` նաև մնացած ձայնանիշերը), ապա դրանք հանգիստ կարող եք երգել ձեզ համար սովորական ընթերցմամբ, այսինքն` փուշը ռեի փոխարեն դո կարդալով կամ, ասենք, ներքնախաղը` սիի փոխարեն լա, և դրանից գրառված մեղեդին չի փոխվի:

Թուրքական երաժշտական մշակույթում կիրառված լիմոնջյանական համակարգը փոքր-ինչ տարբերվում է հայկականից թե՛ տեսքով, որում տպագիր ձայնանիշերն ավելի նման են դրանց ձեռագրային ձևերին, թե՛ այլ առանձնահատկություններով: Տևողության նշաններն ուրիշ են (օրինակ՝ 1/8-ը երկգծիկով է նշանակվում, 1/4-ը՝ մեկ գծիկով, 2/4-ը՝ կետով, ծունկի փոխարեն սուղի նշանն է և այլն), իսկ ձայնանիշերի հնչյունային արժեքները, թեև կոստանդնուպոլսյանն են (այսինքն՝ փուշը ռեն է, էկորճը՝ մին և այլն), սակայն ներքնախաղը սի բեմոլն է, ոչ թե սին: Լիմոնջյանի համակարգի թուրքական տարբերակի համար նույնպես տարիներ առաջ ստեղծվել է տառատեսակ, սակայն մենք այն գործածել չենք կարող վերոնշյալ տարբերությունների պատճառով:



Թուրքական տարբերակի լիմոնջյանական ձայնանիշեր
(Hamparsum Nota տառատեսակ)

Այստեղ մենք կներկայացնենք հայկական ձայնանիշերն էջմիածնական ընթերցմամբ, քանի որ դրանով է ժամանակին հրատարակվել հայկական ձայնանիշերով կարևոր ժողովածուների մեծ մասը՝ Ժամագիրքը, Շարակնոցի և Պատարագի՝ թաշճյանական (էջմիածնական) հրատարակությունները, Տաղարանը, երգարաններ և այլն, և դրանով են արվել ու հրատարակվել նաև Կոմիտասի՝ հայկական ձայնանիշերով բոլոր գրառումները:

Վերոբերյալ նշանները գործածվում են առաջին օկտավայի (*ութնյակ*) առաջին յոթ հնչյունների համար: **Երկրորդ ութնյակ**ի առաջին յոթ հնչյունների նշանները հետևյալն են.



Ինչպես տեսնում եք, ներքևից մեկական կետ (*բարձրանիշ*) է ավելացել (բացի փուշից՝ մնացածում այդ կետը ձուլված է ձայնանիշին), իսկ ներքնախաղի ատամները մեկով ավելացել են:

**Երրորդ ութնյակ**ի նշանները երկրորդ ութնյակի նշաններն են՝ հավելյալ բարձրանիշով: Ներքևում բերված շարքում նույնպես պետք է մեկով ավելանային ներքնախաղի ատամները, սակայն տեխնիկական պատճառներով համակարգչային տառատեսակում հավելյալ ատամի փոխարեն պարզապես կետ է դրված, ինչպես մնացած ձայնանիշերի պարագայում: Այս ութնյակի ձայնանիշերի մեծ մասը, ներառյալ ներքնախաղը, մեր ձայնագրյալ երգարաններում համարյա երբեք չի գործածվում:



**Փոքր ութնյակ**ի նշանները հիմնական նշաններն են՝ տակի գծով (*ստորանիշ*): Եթե ավելի ցածր ութնյակի նշաններ պետք լինեն (այս համակարգում պետք չեն

գալիս, քանի որ երգչական ձայնի հնարավորությունները սահմանափակ են), ապա տակի գծիկը մեկով կավելանա, կդառնա իրար տակ դրված երկու գծիկ (և այսպես շարունակ՝ ավելի ցածր ութնյակների դեպքում):



## Ալտերացիայի նշանը

Կա ալտերացիայի միայն մեկ նշան՝ **կիսվեր**ը (դիեզ), որը կես տոնով բարձրացնում է ձայնը: Կիսվարի (բեմոլ) կարիք այս համակարգով գրառելիս չունենք: Կիսվերը դրվում է ձայնանիշի գլխին՝ տևողության նշանից հետո:



= դո դիեզ      = ռե դիեզ (տևողության նշանի հետ)

## Տևողության նշաններ

Տևողության նշանները նույնպես հիմնականում խազերի պատկերներ ու անվանումներ ունեն: Դրանք 12-ն են:

| | | |
|---|---|---|
| կետ | • | 1/4 |
| երկկետ կամ զույգկետ | •• | 2/4 |
| եռակետ | ∴ | 3/4 |
| սուղ | ∘ | 4/4 |
| ստոր | , | 1/8 |
| երկստոր | ,, | 1/16 |
| կետ-ստոր | ⁚ | 1/4 + 1/8 (3/8) |
| ծունկ | ɔ | 1/32 |
| ծնկներ | ɔɔ | 1/64 |

| | | |
|---|---|---|
| թավ |  | 1/8 + 1/16 (3/16) |
| կիսաթավ |  | 1/16 + 1/32 (3/32) |
| քառաթավ |  | 1/32 + 1/64 (3/64) |

Տևողության նշանները դրվում են ձայնանիշի գլխին: Եթե կիսվերով ձայնանիշ լինի, ապա կիսվերը կդրվի *տևողության նշանից հետո*, ինչպես արդեն գրել ենք:



Տևողության նշանը նույն տևողությամբ ձայնանիշերի խմբի միայն առաջին ձայնանիշի վրա է դրվում. մյուսների վրա դնելու կարիք չկա: Կարող է դրվել նաև հաջորդող նույնաչափ ձայնանիշերի վրա, եթե առանձին վանկերի համար են կամ շեշտված պիտի կատարվեն, բայց ինչ-որ պատճառով (օրինակ՝ տեխնիկական) գրության մեջ չեն առանձնացվել:



Սովորաբար խմբի վերջին ձայնանիշի վրա (եթե այն առանձին վանկի համար չի գործածվում) տևողության նշան չի դրվում, քանի որ խմբի առաջին ձայնանիշի տևողության նշանը հուշում է, թե վերջինն ինչ է: Սա հատկապես կիրառվում է «կետիկով» նոտաների համապատասխան տևողության նշաններին (3/8, 3/16, 3/32, 3/64) հաջորդող ձայնանիշերի դեպքում:



Հետևյալ եռյակում տևողության նշանը (1/8) դրված է միայն մեջտեղի ձայնանիշի վրա, ինչը նշանակում է, որ մյուս երկուսը 1/16 տևողությամբ պիտի երգվեն:



Տրիոլն ու նույն տևողությամբ կենտ թվով ձայնանիշերի ավելի մեծ խմբերը գրվում են հետևյալ կերպ. կենտրոնում դրվում է թվի նշանը և աղեղ, բայց մեծ մասամբ թիվը չեն գրում. աղեղը բավական է:



Տևողության նշանները ձայնանիշերի կողքին ավելի ցածր դիրքում գրվելիս դառնում են **ձայնահատի** կամ **դադարի (պաուզա) նշաններ**։



## Այլ նշաններ

***Հատածը*** (տակտի նշանը) խոշոր վերջակետն է։ ***Քառակետը*** եղանակի վերջում դրվող նշանն է։ Սրանք երկուսն էլ չեն գործածվել հայկական ձայնանիշերով հրատարակված ժողովածուների մեծ մասում (Ժամագիրք, Պատարագ, Շարակնոց ևն). դրանց կարիքը չկա։ Դրանք գործածվում են Եզնիկ քհն. Երզնկյանցի հրատարակած «Ձայնագրեալ ազգային երգարանում», Կոմիտասի՝ Ակնա երգերի հրատարակությունում, սակայն չեն գործածվում, օրինակ, Կոմիտասի երկերի 13-րդ հատորի գեղջուկ երգերի գրառումներում։ Այնպես որ այս նշանները կարելի է դասել հայկական ձայնագրության համակարգի ոչ պարտադիր նշանների կարգում։

***Խաղը*** տրելն է կամ վիբրատոն. դրվում է ձայնանիշից առաջ՝ վերևում։

***Անցանիշը (աղեղի տեսակ)*** երկու իրար կից ձայնանիշեր կապելու համար է։

***Թե՛ կապի, թե՛ կրկնության տարբեր վերջավորությունների նշան*** է երկու կողքից ուղիղ կիսափակագծերի մեջ առնված գծիկավոր նշանը։ Որպես կապի նշան գործածվում է նաև եվրոպական աղեղը։

| | |
|---|---|
| Հատած | : |
| Քառակետ | : : |
| Խաղ |  |
| Անցանիշ |  |
| Կապի նշաններ |  |

Սակայն հայկական ձայնագրությամբ հրատարակված ժողովածուների մեծ մասում հնչյունախմբերը հազվադեպ են կապի նշանով միավորվում (ավելի հաճախ գործածվում է անցանիշը), քանի որ երգերի բառերի վանկային բաժանումները ցույց են տալիս, թե որ վանկին ինչ հնչյունախումբ է բաժին ընկնում։

Այսպիսով՝ հայկական ձայնագրության մեջ գործում է հետևյալ սկզբունքը. գրությունը չծանրաբեռնել այնպիսի նշաններով, որոնց նշանակությունն առանց գրության էլ է հասկանալի։

Կրկնվող հատվածներն ու դրանց կրկնության տեղերը նշելու համար գործածվում են այլևայլ նշաններ (*դարձանիշ*)։

※ ※ *ff* ⁂ ✻

Ֆորշլագն ու նախշլագը (*ընդհարումն*) նույն սկզբունքով են գրվում հայկական ձայնագրության մեջ, ինչ եվրոպականում, այսինքն՝ փոքրացված չափով ու բարձրացված դիրքով ձայնանիշեր՝ հիմնական ձայնանիշից առաջ կամ հետո։



Հայկական ձայնագրության մեջ գործածվում են նաև եվրոպականից փոխառված հետևյալ նշանները՝ ֆերմատան (*երկարումն* կամ *քաշ*), կրեշենդոն ու դեկրեշենդոն (*զորացուցիչ* և *մեղմացուցիչ*)։



# Հայկական ձայնագրության ստեղնաշարային դասավորվածքը

Համակարգչում հայկական ձայնագրությամբ մեղեդի գրառելու համար պետք է տեղակայել **LimonjianNotation** տառատեսակը (հեղինակ՝ Ռուբեն Թարումյան, պատվիրատու՝ «Վեմ» կրթամշակութային հիմնադրամ) և համապատասխան ստեղնաշարը, ապա խմբագրիչ ծրագրում ընտրել նշված տառատեսակն ու ակտիվացնել համապատասխան ստեղնաշարը։

## Ուինդոուսյան ստեղնաշար

«Ուինդոուս» ՕՀ-ում այս ստեղնաշարը տեղակայվում է ստեղնաշարային դասավորվածքների շարքում Luxembourgish լեզվի տակ՝ Armenian Musical Notation անունով։




Ստեղնաշարի վերին առաջին շարքում տևողության նշաններն են, որոնք իբրև **ձայնահատ**ի նշաններ գործածելու համար դրանք պետք է սեղմել ձայնանիշից հետո երկու բացատ դնելուց հետո։ Խմբագրիչ ծրագրերի մեծ մասում այս նշանի դիրքը ճիշտ չի լինում։ Ուստի գործածեք այն ծրագրերը, որոնցում ձայնահատի նշանները ճիշտ են աշխատում (առանց հավելյալ ձևաչափման)։ «Ուինդոուսում» մեր փորձարկած ծրագրերից LibreOffice-ը, Microsoft Publisher-ը, FocusWriter-ը և InDesign-ը ձայնահատի նշանները ճիշտ են դնում։ Այս ուղեցույցի վերջում բերված նմուշները ստեղծել ենք LibreOffice ծրագրով։

## Լինուքսյան և մակինտոշյան ստեղնաշար

Լինուքսյան ստեղնաշարը տեղակայելու համար ներբեռնեք «Լինուքսում» հավելյալ հայկական ստեղնաշարային դասավորվածքներ գործածելու համար ստեղծված սեղմանիշքը, այն ապասեղմեք և նախ կարդացեք **«Կարդա սա»** նիշքը, որտեղ գրված է, թե ինչ է պետք անել: «Մակ» ՕՀ-երի համար ներբեռնեք ու տեղադրեք «ArmNotation.keylayout» ստեղնաշարային դասավորվածքը:




**Երկրորդ ութնյակ**ի նշանները գտնվում են վերևից երկրորդ շարքում՝ ձախից աջ, կամ մուտքագրվում են, երբ հիմնական ձայնանիշերի ստեղները գործածվում են շիֆտով: Լատ. ***i*** տառի ստեղնի տեղում *բարձրանիշ*ն է:

**Երրորդ ութնյակ**ի նշանները մուտքագրելու համար պետք է սեղմել վերևից երկրորդ շարքի ձայնանիշերի ստեղները և **լատ. i տառի** ստեղնը:

**Փոքր ութնյակ**ի նշանները մուտքագրելու համար պետք է սեղմել հիմնական ձայնանիշերի ստեղները և **լատ. k ստեղնը**:

Այսինքն՝ «Լինուքսում» ու «Մակում» ստանալու համար սեղմել **q** և **i**.

-- սեղմել **w** և **i** (և այդպես շարունակ).

-- սեղմել **a** և **k** (և այդպես շարունակ):

**Տևողության նշաններ**ն իբրև **ձայնահատ**ի նշաններ գործածելու համար դրանք սեղմել ձայնանիշից հետո երկու բացատ դնելուց հետո: Խմբագրիչ ծրագրերի մեծ մասում այս նշանի դիրքը ճիշտ չի լինում: Ուստի գործածեք այն ծրագրերը, որոնցում ձայնահատի նշանները ճիշտ են աշխատում (առանց հավելյալ ձևաչափման): «Լինուքսում» մեր փորձարկած ծրագրերից LibreOffice-ը, Calligra Words-ը և CherryTree-ն ձայնահատը ճիշտ են դնում: «Մակի» Pages ծրագրում նույնպես ձայնահատը ճիշտ է դրվում: Այս ուղեցույցի վերջում բերված նմուշները ստեղծել ենք «Լինուքսում» LibreOffice ծրագրով:

## Մի քանի խորհուրդ

1) Երգի մեղեդին մուտքագրելուց առաջ նախ մուտքագրեք երգի բառերը (ընտրելով, օրինակ, 9 կամ 10 կտ տառաչափը)։ Սա թույլ կտա ձայնանիշերը հավաքելիս ճիշտ կողմնորոշվել ձայնանիշերի դասավորության հարցում (քանի որ դրանք պիտի դասավորվեն այնպես, որ բառերի վանկերի չափերին համապատասխանեն)։

2) Բառերի վերևում մեկ պարբերության չափով միջակայք թողնելով և ընտրելով նիշերի ավելի մեծ չափ (հարմար է 14 կտ չափը)՝ մուտքագրեք Լիմոնջյանի համակարգով (չմոռանաք տառատեսակների շարքից ընտրել LimonjianNotation տառատեսակը և փոխել ստեղնաշարի դասավորվածքը)։

3) Յուրաքանչյուր տող պիտի նոր պարբերություն լինի (այսինքն՝ տողի ավարտին սեղմեք մուտքի ստեղնը՝ շարունակությունը տանելով համապատասխան տող-պարբերություն)։

4) Երբեմն կարող է այնպես լինել, որ բացատ դնելու ժամանակ նախորդ ձայնանիշի վերևում դրված նշանը բացատի հետ դուրս ցատկի և հայտնվի ո՜չ իր տեղում (սա կարող է պատահել, օրինակ, ձայնահատի և անցանիշի նշանները դնելու ժամանակ կամ արդեն խմբավորված ձայնանիշերը բացատով անջատելիս. պետք է ուշադիր լինել)։ Այդ դեպքում հետարկում (undo) կատարեք՝ խախտվածն ուղղելու համար, և *սեղմեք աջ սլաքի* ստեղնը։ Միայն դրանից հետո՛ սեղմեք բացատը։

5) Մեղեդիների գրառումներն աշխատանքի ընթացքում հաճախ փոխարկեք PDF-ի. այսինքն՝ մեկ-երկու էջ մուտքագրելուց և ձեր աշխատանքը ստուգելուց հետո կատարված աշխատանքը փոխարկեք PDF-ի (ապահովությունը լավ բան է)։

6) Ձեր գրառումը մի նիշքից մի ուրիշը պատճենելիս նոր նիշքի էջի ձևաչափումը պիտի նույնը դարձնեք, ինչ հինը, որպեսզի տողերը չխախտվեն (այսինքն՝ համոզվեք, որ էջի ձախ և աջ լուսանցքների տարածքների չափը երկու նիշքերում նույնն է, կամ եթե պարզվի, որ հին նիշքում գործածել եք նիշերի միջակայքի սեղմում (character spacing-ի արժեքը փոքրացրել եք), ապա նորում նույնպես պիտի սեղմեք նույն չափով և այլն)։ Այլապես կլինեն տողային խախտումներ։

7) Տողերի խախտումներից խուսափելու համար կարող եք յուրաքանչյուր տողի համար գործածել առանձին տեքստատուփ (text box)։ Սակայն մեր փորձը ցույց տվեց, որ այդպես աշխատելն ավելի ժամանակատար է և այնքան էլ հարմար չէ՝ չնայած տողերի կայունությանը։ Բայց փորձե՛ք. գուցե տեքստատուփերով աշխատելն ավելի հարմար լինի ձեզ համար։ Ներքոբերյալ նմուշները մենք պատրաստել ենք սովորական տեքստային շարվածքով, LibreOffice-ի Writer-ում, վերոբերյալ սկզբունքներով։

# Համակարգչում հայկական ձայնանիշերով ստեղծված նմուշներ

Այստեղ ներկայացնում ենք տողերիս հեղինակի՝ եվրոպական ձայնանիշերից հայկականին փոխարկած երկու նմուշ՝ մեկ շարական և Բախի մեկ արիա՝ պարզապես ցույց տալու համար հայկական ձայնագրության, ինչպես նաև դրա համար ստեղծված տառատեսակի ու ստեղնաշարի հնարավորությունները: Կից տալիս ենք նաև այս երգերի՝ եվրոպական նոտագրությամբ տարբերակների հղումները, որպեսզի ցանկության դեպքում համեմատեք երկու տարբերակները:

Հայկական ձայնանիշերով անթիվ-անհամար երգեր կգտնեք այս ուղեցույցի վերջում տրված «Ներբեռնելի գրականություն» ցանկի հրատարակություններում, ուստի այստեղ այդպիսի գրառումներ չենք ներկայացնում:

## Բաց մեզ, Տէր (Դռնբացէքի շարական)




Շարականի՝ եվրոպական նոտագրությամբ տարբերակը տեսեք այստեղ:

# BACH
# CANTATA NO. 51

## Aria





hen, müs-se des- sen Ruhm er- hö - - - - - - hen, er- hö – hen,



und wir wol-len un- serm Gott Gleich-falls jetzt ein Op-fer brin-gen, Daß er uns in Kreuz und



Noth, in Kreuz_____ und Noth, in Kreuz und Noth___ al - - le - zeit hat bei- ge -



stan-den, al- le- zeit hat bei-ge - stan - den, al - - - - - - - - - - |-



- - - - - - - - - - - - - - - - - le - zeit hat bei-ge-stan-den. Jauch- zet



Gott in al - len Lan-den, jauch - - - - - - - - - - - - - - - - - - -



- zet! Jauch - - - - - - - - - -

Բախի 51-րդ կանտատայի եվրոպական նոտաներն այստեղ են։



# Ներբեռնելի գրականություն

## Հայկական ձայնանիշերով գրքեր համացանցում

Այստեղ ներկայացված այն գրքերը, որ հրատարակվել են 19-րդ դարում ու 20-րդի սկզբին, թվայնացվել են Հայաստանի ազգային գրադարանի կողմից (բացի մեկից)։ greenstone.flib.sci սկիզբով հասցեներում տեղադրված գրքերի մեծ մասը բացվում է ընթերցիչում, որտեղ չի տրված PDF ներբեռնելու հնարավորություն։ Սակայն եթե հասցեի տողի վերջում կատարեք հետևյալ փոփոխությունը՝ **_index.html** վերջնամասը փոխարինեք **.pdf** տառերով, կբացվեն գրքերի PDF տարբերակները։ Կոմիտասի ներկայացված հատորը բացվում է ուրիշ տեսակի ընթերցիչում, և այստեղ PDF-ը ներբեռնելու համար պետք է սեղմել ընթերցիչի վերին աջակողմյան **i** տառի վրա և ցատկող պատուհանում սեղմել «Ներբեռնելի ձևաչափ» բառերի տակի պատկերակը։

Այս ցանկը սկզբնապես հրատարակվել է «Գրահավաք» բլոգում, և այնտեղ էլ մշտապես կատարվելու են այս ցանկի թարմացումները, եթե համացանցում հայտնվեն հայկական ձայնանիշերով հրատարակությունների նոր թվայնացումներ։

**Ժողովածուներ**

◈ Երգք ձայնագրեալք ի ժամագրոց Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ, Վաղարշապատ, 1877

◈ Երգք ձայնագրեալք ի ժամագրոց Հայաստանեայց Ս. եկեղեցւոյ *[վերևի ժողովածուն՝ **եվրոպական նոտագրությամբ**]*, Երեւան, 2017

◈ Ձայնագրեալ երգեցողութիւնք Սրբոյ Պատարագի, Վաղարշապատ, 1874

◈ Ձայնագրեալ երգեցողութիւնք Սրբոյ Պատարագի, Վաղարշապատ, 1878. կամ այստեղ

◈ Ձայնագրեալ մանկական երգարան. երգեր եւ պար երգեր ի հրահանգ եւ ի պէտս հոգեւոր դպրոցաց հայոց, խմբ. Եզնիկ քհն. Երզնկեանց, Վաղարշապատ, 1880

◈ Ձայնագրեալ շարական հոգեւոր երգոց Սուրբ եւ ուղղափառ առաքելական եկեղեցւոյս Հայաստանեայց, Վաղարշապատ, 1875

◈ Ձայնագրեալ Տաղարան ի պէտս սպասաւորաց Հայաստանեայց սրբոյ եկեղեցւոյ, Վաղարշապատ, 1900

◈ Ձայնագրեալ քաղուածք օրհնութեանց, հետեւակք օրհնութեանց տէրունական տօնից, այլ եւ կարգ հանգստեան եւ անդաստանի շարականաց ի լրումն ձայնքաղի, Վաղարշապատ, 1882

◈ Ձայնագրեալ ազգային երգարան հայ դպրոցների համար, Ժողովեց եւ ձայնագրեց Եզնիկ քհն. Երզնկեանց, Վաղարշապատ, 1882

◈ Շար Ակնայ ժողովրդական երգերի. ձայնագրեց Կոմիտաս Վարդապետ, Սբ Էջմիածին, 1895

◈ Կոմիտաս, Երկերի ժողովածու, հտ. 13. Հայ ժողովրդական երգեր, Գիրք Ե.

Ժողովրդական երգերի ժողովածու («Ձայնակարգային»). փաքսիմիլային հրատարակություն, Երևան, 2004

**Հայկական ձայնանիշերով նմուշներ կան նաև հետևյալ գրքում՝**

◈ Մուրադեան Պ., Մուշեղեան Ա., Արմաշի դպրեվանքը, Երեւան, 1998

**Հայկական ձայնագրության ձեռնարկներ**

◈ Թաշճեան Նիկողայոս, Դասագիրք եկեղեցական ձայնագրութեան հայոց, Վաղարշապատ, 1874

◈ Երզնկեանց Եզնիկ, Դասագիրք հայկական ձայնագրութեան, հտ. Ա, Վաղարշապատ, 1880

◈ Աթայան Ռոբերտ, Ձեռնարկ հայկական ձայնագրության, Երևան, 1950

◈ Kerovpyan Aram. Manuel de Notation musicale arménienne moderne, Musica Mediævalis Europæ Orientalis, no 2, Ed. H. Schneider, Tützing, 2001

**Հայկական ձայնագրության համակարգի մասին**

◈ Հիսարլեան Արիստակէս, Պատմութիւն հայ ձայնագրութեան եւ կենսագրութիւնք երաժիշտ ազգայնոց 1768-1909 (վարձատրեալ Իզմիրեան մրցանակաւ), Կ. Պոլիս, 1914

Սեդա Ստամբոլցյան
2019
Երևան

